Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ







№ 11 ՀՈՒՆԻՍ 1952

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Կ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝* 2—52—78




# ՎՈԼԳԱ-ԴՈՆ ՆԱՎԱՐԿԵԼԻ ՋՐԱՆՑՔԸ

Դարեր շարունակ ռուս մարդը մտածել է Վոլգան ջրանցքով Դոնի հետ միացնելու մասին։ Դարերով անիրականալի թվացող այդ երազանքը մի քանի տարվա մեջ իրականություն դարձավ միայն Սովետական իշխանության օրոք։ Սովետական մարդիկ հարյուրավոր կիլոմետրերի վրա պատռեցին հողը, կառուցեցին մինչ այժմ հավասարը չունեցող ամբարտակ, ստեղծելով աշխարհում ամենախոշոր արհեստական լիճը, կառուցեցին ջրային հզոր արգելափակոցներ, պոմպակայաններ, փոխելով Դոնի ջրերի ընթացքը։ Դոնը հոսեց դեպի Վոլգա, մայր Վոլգան գնաց ընդառաջ և իր գիրկն առավ նրան։ Շարք մտավ Ստալինյան մեծ կառուցումների առաջնեկը՝ Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքը։

Հիանալի պատմություն ունի Վոլգա գետը։ Ռուսական այդ մեծ գետի և նրա վտակների ափերին են ձևավորվել Մոսկովյան, Վլադիմիրյան, Սուզդալյան իշխանություն-

ները, որոնք հետագայում դարձան ռուսական ազգային պետության կազմավորման հիմքը: Այս գետի ափին է ծնվել բոլշևիկների պարտիայի ստեղծող և ուսուցիչ մեծ Լենինը: Այստեղ 1918 թվականին ընկեր Ստալինը կազմակերպեց Ցարիցինի հերոսական պաշտպանությունը, ջախջախելով ռուս սպիտակ գվարդիական բանդաներին: Վոլգայի ափին՝ Ստալինգրադում 1942—1943 թվականներին Կարմիր Բանակը շրջապատեց և ոչնչացրեց ֆաշիստական Գերմանիայի 330 հազարանոց բանակը: Այժմ Վոլգայի վրա ընթանում է մարդկության պատմության մեջ իր ծավալով ու թափով չտեսնված շինարարություն:

Վոլգան Եվրոպայի ամենամեծ գետն է: Նա ունի 3700 կիլոմետր երկարություն: Վտակների հետ միասին Վոլգան ունի 10 հազար կիլոմետր նավարկելի ճանապարհ: Նրա ավազանը հավասար է մեկ միլիոն 380 հազար քառակուսի կիլոմետրի: Այդ տարածությունն ավելի մեծ է, քան Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Հոլլանդիայի, Իտալիայի, Շվեյցարիայի և Ավստրիայի տերիտորիաները միասին վերցրած: Վոլգայի ավազանում բնակվում են 50 միլիոն մարդ, այսինքն Սովետական Միության ազգաբնակչության



մոտ մեկ քառորդը: Վոլգայի ափերին կառուցված են 80 քաղաքներ: Վոլգային և նրա վտակներին բաժին է ընկնում Սովետական Միության գետային փոխադրումների կեսը:

Դարեր շարունակ Վոլգան հանդիսացել է Ռուսաստանի ջրային ամենախոշոր ճանապարհը: Այժմ էլ դեպի վեր լողացող նավերը տանում են Բաքվի նավթը, Պովոլժյեյի հացը, իսկ դեպի ներքև՝ Հյուսիսի փայտը, տեքստիլ արտադրանքը, Բալախանի թուղթը, Յարոսլավլի և Գորկու ավտոմեքենաները, մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի տասնյակ տեսակ արտադրանքներ:

Չնայած այդ բոլորին, Վոլգան թափվելով ծովերից ու օվկիանոսներից կտրված Կասպից լիճը, որն իր մեծության շնորհիվ ծով է կոչվում, Վոլգան՝ ջրային այդ մեծ ճանապարհը, կապ չի ունեցել օվկիանոսների հետ:

Աշխարհագրական այդ անարդարությունը վճռեցին ուղղել սովետական մարդիկ, Վոլգան միացնելով Դոնի հետ:

Դեռ 19-րդ դարի առաջին կիսում Վոլգան միացել է Բալթիկ ծովին, այդ ճանապարհը անցնում է Վոլգայից Ռիբինսկայայի ջրամբարը, Շեկոնե գետով, Սպիտակ լճի եզրերով անցնող ջրանցքով, Կովժե գետով, Մա-

րինյան միացնող ջրանցքով, Վիչեգդե գետով, Օնեգա լճով, Սվիր գետով, Լադոգա լճով, Նեվա գետով և Ֆիննական ծոցով դեպի Բալթիկ ծովը։ 1933 թվականին սովետական մարդիկ կառուցեցին ընկեր Ստալինի անվան Սպիտակ-Բալթիկ ծով ջրանցքը, Վոլգան միացնելով նաև Սպիտակ ծովի հետ։ 1937 թվականին Մոսկվայի անվան ջրանցքի գործարկումով Մոսկվան դարձավ Կասպից, Բալթիկ և Սպիտակ ծովերի նավահանգիստ։

1918 թվականի մայիսին Լենինի նախագահությամբ կայացած Ժողովրդական Կոմիսարների Սովետը քննարկեց Վոլգա-Դոն ջրանցքի շինարարության հարցը։ Նույն տարվա սեպտեմբերի 12-ին ընկեր Ստալինը մի փաստաթղթի վրա մակագրել է «Ջրանցքը կփորենք...»։

Վոլգա-Դոն ջրանցքի շինարարությունն սկսվել է մինչև 1941 թվականը և ընդհատվել Հայրենական Մեծ պատերազմի պատճառով։ 1948 թվականին վերսկսվեց ջրանցքի շինարարությունը։ 1950 թվականի դեկտեմբերի 28-ին հրապարակվեց ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի որոշումը «Վոլգա-Դոն նավարկելի ջրանցք կառուցելու



և Ռոստովի ու Ստալինգրադի մարզերի հողերը ոռոգելու մասին»։

Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի գործարկումով Ազովի ծովով, Կերչի նեղուցով, Սև ծովով, Բոսֆորի նեղուցով, Մարմարյան ծովով, Դարդանելի նեղուցով, Միջերկրական ծովով, Ջիբրալտարի նեղուցով Վոլգան կմիանա Ատլանտյան օվկիանոսին, իսկ Սուեզի ջրանցքով, Կարմիր ծովով՝ Հնդկական օվկիանոսին, ջրային կապ ստեղծելով աշխարհի բոլոր նավահանգիստների հետ։ Վոլգան կդառնա մեր Հայրենիքի ջրային ամենախոշոր զարկերակը, որը կմիացնի 5 ծովեր և Հայրենիքի սիրտ Մոսկվան կդառնա Սպիտակ, Բալթիկ, Կասպից, Ազովի, Սև ծովերի և ապա Թուրքմենական մեծ ջրանցքի գործարկումով 6-րդ՝ Արալյան ծովի նավահանգիստ։

Ստալինգրադից մինչև Ռոստով ձգվող Վոլգա-Դոն ջրային գլխավոր ուղու երկարությունը 540 կիլոմետր է, այդ ուղու բաղկացուցիչ մասն է կազմում Վոլգա-Դոն ջրանցքը 101 կիլոմետր երկարությամբ, տասներեք շլյուզներով, երեք ամբարտակով, ջրհան կայաններով, նավահանգիստներով, կամուրջներով և այլ կառուցվածքներով։

Ջրային ուղու կենտրոնում կան օղակը Ցիմլյանսկայա կարգավորիչ ջրամբարն է, որը գետի մակերեսից ջուրը կբարձրացնի 26 մետր։ Այդ բարձրությունից ջուրը թափվելով կաշխատեցնի Ցիմլյանսկայայի էլեկտրակայանը, որը կունենա 160 հազար կիլովատ-ժամ կարողություն։

Ցիմլյանսկայա ջրամբարի երկարությունը 360 կիլոմետր է, լայնությունը՝ մինչև 38 կիլոմետր, տարողությունը՝ 13 միլիարդ խորանարդ մետր։ Այդ հսկա ջրամբարը կոռոգի 750 հազար և ջրովի կդարձնի 2 միլիոն հեկտար հողամաս։ 568 կիլոմետր ձգվող ոռոգման մագիստրալային ջրանցքը ջուր կմատակարարի ընդհանուր ցանցին։

Ոռոգելի և ջրովի դարձվող հողերում կըմշակվեն ցորեն, բամբակ, բրինձ և այլ կուլտուրաներ։ Հաշված է, որ ոռոգելի 750 հազար հեկտար հողամասերում ցանվող միայն ցորենից մեր երկիրը տարեկան կըստանա լրացուցիչ 256 հազար ցենտներ բերք։

Միայն Ռոստովի մարզի ոռոգելի տարածություններով կանցնեն 30 հազար կիլոմետր ձգվող ճյուղավորված ջրանցքներ, 15 հազար կիլոմետր երկարությամբ խճուղիներ և ասֆալտապատ ճանապարհներ։



Վոլգա-Դոն ջրանցքով Մոսկվայի և Ռոստովի միջև կերթևեկեն ապրանքատար և մարդատար հսկա դիզել-էլեկտրական նավեր։ Մարդատար նավերը ունեն կահավորված խցիկներ մինչև 500 ուղևորների համար։ Նավում կլինի ճաշարան, երաժշտական և պարային հրապարակներ, մանկական հրապարակ, լողարան, գրադարան ընթերցարան, կինո-դահլիճ, ռադիոկայան և այլն։

Ջրանցքի երկարությամբ կդրվեն էլեկտրալուսավորման նորագույն ազդանշաններ, կկիրառվի ռադիոնավիգացիան։ Ցիմլյանսկ և Կալաչ քաղաքներում կկառուցվեն խոշոր նավահանգիստներ, ուր նավերը կբեռնաթափվեն ու կբարձվեն հզոր մեխանիզմների միջոցով։ Հիմնովին կվերակառուցվի Դոնի-Ռոստովի նավահանգիստը։ Ջրանցքի շնորհիվ միայն Դոնի գետային ավազանում բեռների շրջանառությունը կավելանա մոտ 5—6 անգամ։

Սովետական ճարտարապետները զարդարում են Վոլգա-Դոն ջրանցքը՝ նրա ամբողջ երկարությամբ։ Ջրային տրասսայում ընկած կառուցվածքների ամբողջ հսկայական կոմպլեքսը, շլյուզները, հիդրոկայանները, երկաթ-բետոնե և հողաշեն ամբարտակները,

պոմպային կայանները, կամուրջները և այլ շինարարություններ՝ իրենցից ներկայացնում են ճարտարապետական միասնական հոյակապ ամբողջություն։ Վոլգայի կողմից, դեպի ջրանցքը բերող մուտքի մոտ ստեղծվող ճարտարապետական կառուցվածքի կենտրոնում կբարձրանա ընկեր Ի. Վ. Ստալինի հոյակապ մոնումենտը 22 մետր, իսկ պատվանդանի հետ միասին 50 մետր բարձրությամբ։ № 1 շլյուզի վարչության շենքը, որը գտնվում է Վոլգայի կողմից դեպի ջրանցքը տանող մուտքի մոտ, կառուցվում է ջրանցքի վրա, հսկայական հաղթակամարի ձևով։ Այդ շենքի բարձրությունը կլինի 40 մետր։ Վոլգայի մյուս կողմը, Սարպինսկի հարթավայրում, պատրաստվում է 25 մետր բարձրություն ունեցող փարոս։ Դա մի վիթխարի ճարտարապետական կառուցվածք է, որը հուշարձան կլինի Ցարիցինի և Ստալինգրադի դյուցազներգությունների մասնակից ծովայինների համար։

Հիդրոտեխնիկական հզոր կառուցվածքներ են շինվում նաև Դոնի կողմից դեպի ջրանցքը տանող մուտքի մոտ։ № 13 շլյուզը, որը գտնվում է Կալաչ քաղաքի շրջանի պատմական վայրում, նույնպես ունի հաղթական կամարի ձև, քանդակագործական կոմպոզիցիայով պսակված։ Այս կամարի գեղարվեստական ձևավորումը նվիրված է հերոսական Սովետական Բանակին, որը Կալաչի շրջանում փակեց 330 հազարանոց գերմանա-ֆաշիստական խմբավորման շրջապատման օղակը։



Գեղեցիկ հուշարձաններ և քանդակներ են դրվելու նաև այլ վայրերում։

Վոլգա-Դոն ջրանցքի շինարարության նախաձեռնության մեջ դրսևորվեց բոլշևիկների պարտիայի ու անձամբ ընկեր Ստալինի անդուլ հոգատարությունը սովետական մարդկանց նկատմամբ։ Այդ շինարարության թափի ու ծավալի մեջ արտահայտվեց Սովետական Միության ժողովուրդների երախտագիտությունը բոլշևիկների պարտիայի ու ընկեր Ստալինի նկատմամբ։

Նավարկելի այդ հսկա ջրանցքի ստեղծումը հանդիսանում է Սովետական Միության հզորության, մեր հերոս ժողովրդի ստեղծագործական աշխատանքի և Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականության մի նոր վառ արտահայտություն։

---

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐՆ ՈՒ ՆՈՐԱՐԱՐՆԵՐԻ ՓՈՐՁԸ ԱՐՄԱՏԱՎՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

Հայաստանի բոլշևիկների պարտիայի 15-րդ համագումարը խնդիր դրեց՝ սովետական ագրոտեխնիկայի ու գյուղատնտեսության նորարարների աշխատանքի մեթոդները ընդհանրացնելու և արմատավորելու, մեքենայական պարկը լրիվ արտադրողականությամբ օգտագործելու միջոցով ապահովել խաղողի ու պտղատու այգիների բերքատվության հետագա բարձրացումը։ Հայկոնսերվտրեստի Վորոշիլովի անվան պտղաբուծական սովխոզի կոլեկտիվը հետևողականորեն կենսագործելով ՀԿ(բ)Պ 15-րդ համագումարի այդ ցուցումը, ամեն տարի ստանում է բարձր բերք։ Բավական է ասել, որ սովխոզում մշակվող՝ ծիրանի, դեղձի, տանձի, խնձորի և այլ հիմնական տեսակների 1951 թվականի բերքատվության համախառն պլանը սովխոզի կոլեկտիվը կատարեց 125 տոկոսով, խաղողի բերքա-



տվության պլանը՝ 121 տոկոսով և տարեկան հաշվետվությունը փակեց մեկ միլիոն 300 հազար ռուբլի օգուտով։ Ավելի բարձր բերք ստացան առանձին բրիգադներ ու ագրոտեղամասեր։

Վորոշիլովի անվան պտղաբուծական սովխոզում բարձր բերք ստացվեց շնորհիվ կադրերի ագրոտեխնիկական ուսուցման կազմակերպման, առաջավորների փորձի լայն ընդհանրացման ու արմատավորման, այգիների ագրոտեխնիկական ժամկետներում բարձրորակ մշակության, մեքենայական պարկը լրիվ կարողությամբ արտադրողաբար օգտագործման, կոլեկտիվում ծավալված քաղաքական-մասսայական աշխատանքի։

Սոցիալիստական գյուղատնտեսության առաջատար ուժը մեքենայացումն է։ Պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ տարեցտարի ավելանում է սովխոզի մեքենայական պարկի կարողությունը, բարձրանում է մեքենաների արտադրողականությունը։ Սովխոզում մեքենայացման են ենթարկված աշխատատար այնպիսի պրոցեսներ, ինչպիսիք են այգիների միջ-

շարային տարածությունների վարը, բուժումը, պարարտացումը, ծառերի բների շուրջը փորելու և փխրեցնելու աշխատանքը: Սովխոզի մեքենայական պարկն այժմ ունի 5 տրակտոր, որից երեքը վար կատարող, իսկ երկուսը՝ այգիների միջշարային մշակության համար: Այգիների սրսկումը մեծ մասամբ կատարվում է ինքնաթիռով, որը տասնյակ անգամ տնտեսում է բանվորական ուժը, արագացնում է ագրոմիջոցառումների կատարումը:

Սովխոզի մեխանիզատորներն իրենց աշխատանքում արմատավորելով երկրի անվանի մեխանիզատորների, ինչպես նաև Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Իվան Բունեևի հարուստ փորձը, աշխատում են ժամանակի գրաֆիկով, մեխանիզացիան օգտագործում լրիվին ու անխափան: Տրակտորիստ Հ. Մաղաքյանն իր ՆԱՏ-ի տրակտորը տեխնիկական լավ վիճակում պահելով, այգիների միջշարային տարածությունների վարի օրվա նորման կատարում է 150 տոկոսով: Մեխանիկական ցեխի վարպետ Շ. Շահինյանի ռացիոնալիզատորական առաջարկի կիրառման շնորհիվ ծառերի բնի շուրջը կատարվող փորի ու փխրեցման աշխատանքնե-



րի համար սահմանված ժամկետները կրճատվում է մի քանի անգամ:

Պտղաբուծության և այգեգործության համար տեխնիկապես զինված վարպետներ պատրաստելու համար սովխոզում կազմակերպված են եռամյա ագրոտեխնիկական դասընթացներ, որտեղ ընդգրկված են բրիգադիրները, օղակավարները և առաջավոր բանվոր-բանվորուհիները՝ թվով 75 հոգի: Այդ խմբակում մասսայականացվել են Կոստիչևի—Դոկուչաևի—Վիլյամսի տեսությունը՝ ցանքաշրջանառության միջոցով բարձր և կայուն բերք ստանալու մասին, պրոֆ. Շիտտի տեսությունը՝ ծիրանի ծառերի ծաղկման շրջանը հետաձգելու և նրա օրգանիզմում ցրտադիմացկանություն ստեղծելու մասին: Ագրոտեխնիկական անձնակազմի միջոցով յուրաքանչյուր աշխատողի սեփականությունն ենք դարձրել այն, թե ինչպես էտել պտղատու և խաղողի այգիները, պարարտացնել, բուժել, փորել, սնուցում տալ, ոռոգել, կանաչ հատում կատարել և մշակության այլ պրոցեսներ: Դեռ 1949 թվականից կազմակերպել ենք ագրոտեխնիկական կաբինետ, որտեղ ցուցադրվում են սովխոզի հողերի տեսակները, նրանց մշակության ժամկետ-

ները, պտղատու ծառերի հիվանդությունները, վնասատուներն ու նրանց դեմ պայքարի միջոցառումները։ Ագրոկաբինետը, որի վարիչն է գյուղատնտես ընկ. Ա. Առաքելյանը, մեծ օգնություն է կազմակերպում ագրոտեխնիկական պրոպագանդան լայնորեն կազմակերպելու համար։ Այդ օգնության շնորհիվ հնարավորություն է ստեղծվել սովխոզի այգիները մշակել գիտական հիմունքներով։

Սովխոզի պարտիական կազմակերպության ու դիրեկցիայի նախաձեռնությամբ ստեղծվեց ռեսպուբլիկայի գիտական ուժերի և սովխոզի աշխատողների սերտ համագործակցություն, որն ապահովեց գիտության նվաճումների, տեխնիկայի ու առաջավոր փորձի արմատավորումը սովխոզում։ Գյուղատնտեսական ինստիտուտի և սովխոզի մասնագետների միջոցով կարդացվել են մի շարք դասախոսություններ՝ խաղողի ու պտղատու այգիների մշակության առանձին ձեռնարկումների շուրջը, միչուրինյան ագրոկոմպլեքսի խնդիրների մասին, որի շնորհիվ վերականգնվեցին շարքից դուրս եկած համարվող տասնյակ հեկտարներով խաղողի ու պտղատու այգիները, բարելավվեց նրանց մշակությունը։



Մեր սովխոզում լրիվին արմատավորել ենք ցանքաշրջանառության կոմպլեքսը՝ վարը, կուլտիվացիան, բազմամյա խոտաբույսերի ցանքսը, պարարտացումը, սնուցումը և այլն։ Արարատյան դաշտավայրի կլիմայական պայմաններում առավել մեծ նշանակություն է ստանում Շիտտի տեսությունը։ Մեր սովխոզն ունի 635 հեկտար միայն պտղատու այգի, մեծ մասը՝ ծիրանի։ Ծառերի մեջ ամենաշուտ ծաղկողը ծիրանին է, որը սովորաբար շուտ ծաղկելով, վաղ գարնանը հաճախակի ցրտահարվում է և վատ մշակության դեպքում նույնիսկ բերքազրկվում։ Շիտտի փորձերով կատարած նախնական աշխատանքները հաջող են անցնում։

Սովխոզի կոլեկտիվում լայնորեն արմատավորել ենք «Արարատ» տրեստի Ստալինի անվան սովխոզի անվանի այգեգործներ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոսներ՝ Շահուկի Սահակյանի, Օլգա Գուրկալովայի, մեր սովխոզի պտղի բարձր բերքի վարպետ Ա. Ղոնյանի աշխատանքի առաջավոր մեթոդները։

Պտղատու այգիների մշակության հարուստ փորձ ունի բրիգադիր Ա. Ղոնյանը, որն այս տարի առաջ է քաշվել ագրոտեղա-

մասի վարիչ։ Իր ագրոտեղամասի պտղատու այգիները նա մշակում է ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներում ու բարձր որակով։ Վաղ գարնանը պտղատու ծառերը պարարտացրել է տեղական և հանքային պարարտանյութերով, որից հետո կատարել է շուրջբնի փոր ու միջշարային տարածությունների խոր վար, հետագայում տվել է ազոտական սնուցում, որը մեծապես նպաստում է բերքատվության բարձրացմանը։

Ծառերի բների շուրջը գտնվող հողերը պահել փխրուն և հետագայում ապահովել նրանց անհրաժեշտ սննդանյութերով,— այս է այն նշանաքանը, որ ընդունել է և հետևողականորեն կատարում է Անդրանիկ Ղոնյանի բրիգադը իր մշակած ագրոտեղամասի այգիներում։ Այդ միջոցառումներով բրիգադն անցյալ տարի բերքատվության պլանը կատարել է 140 տոկոսով, իսկ այս տարի ավելի բարձր բերք է սպասվում։

Սովխոզի կոլեկտիվում արմատավորվել են ագրոտեխնիկական մշակության այնպիսի կարևոր պրոցեսներ, ինչպիսիք են ծիրանի ծառերի խոր էտը, ցրտահարությունից տուժած ծառերի բների բուժումը, ուշ աշնան ծառերի սաղարթի սպիտակեցումը և այլն։



Խաղողագործական բրիգադիր Մովսես Սարգսյանն իր այգիները մշակում է Գուրկալովայի և Սահակյանի մեթոդներով։ Այգեբացը կատարվում է վաղ գարնանը, որի շնորհիվ ճյուղերը մի քանի օր ուշ են բողբոջում և պաշտպանվում են վաղ գարնան ցրտահարությունից։

Բերքատվության բարձրացման համար մեծ ձեռնարկում է էտը, որը կատարվում է այգեգործ մասնագետների ու հմուտ էտվորների միջոցով։ Էտը ճիշտ կատարելով՝ ապահովվում է վազերի ուժեղ աճը, երկարակեցությունը, բարձր և կայուն բերքը։ Էտելիս հաշվի են առնվում եղած հնարավորությունները՝ հողի բերրիությունը, որքանով ուժեղ է հողը, այնքան ավելի շատ ճյուղեր և բողբոջներ են թողնվում վազերի վրա, և ընդհակառակը, որքան թույլ է բերրիությունը, այնքան քիչ են թողնվում դրանք։

Բերքատվության բարձրացման համար նշանակություն ունի այգիների խոր փորը և իրար համապատասխանեցված պարարտանյութերի օգտագործումը։ Վաղ գարնանը այգիներն են տեղափոխում փթեցված պարարտանյութը, նրա հետ միասին ազոտական ու ֆոսֆորական պարարտանյութերը, փռելով

ծառերի, թփերի բների շուրջը և ապա կատարում խոր վար։ Այգեփորը սովորաբար կատարվում է վաղ գարնանը, մինչև ծառերի բողբոջակալելը։ Բողբոջակալված շրջանում այգին փորողը փոքր անզգուշության դեպքում կարող է թափել նուրբ բողբոջները և ավելի վնասել բերքին։ Հողի մեջ սննդանյութերն առատացնելու և բերքը բարձրացնելու համար վեգետացիայի ընթացքում կատարվում է սնուցում։ Սովխոզում արդեն արմատավորվել է այգեգործության ավելի կուլտուրական ու բերքատու միջոցառումը՝ թփերի հենափայտերը փոխարինվում էն լարային ցանցով։

Մեր սովխոզի կոլեկտիվը պաշտպանելով առաջավորների նախաձեռնությունը, պրոպագանդելով նրանց աշխատանքի փորձը, սովետական առաջավոր գիտության նվաճումները, ձգտում է առաջնություն շահել ավելի բարձր բերքի համար Հայկոնսերվտրեստի Միկոյանի անվան սովխոզի կոլեկտիվի հետ ունեցած սոցիալիստական մրցությունում։

Ա. ՅԱՐԱԼՅԱՆ

(Սովխոզի ավագ ագրոնոմ)

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԹԵՄԱՆԵՐ

# ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ

Աշխատավորության շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի բազմաթիվ ձևերի մեջ, իր առանձնակի տեղն ու նշանակությունն ունի ցուցադրական ագիտացիան։ Հետապնդելով մասսաների սոցիալիստական գիտակցության բարձրացման միևնույն նպատակը, ցուցադրական ագիտացիան համարվում է մասսաների համար առավել մատչելի, մասսաների վրա քաղաքական ներգործության տեսակետից առավել ուժեղ միջոցներից մեկը։ Բացի այդ, այն որոշակիորեն տարբերվում է իր կազմակերպման ձևերով ու մեթոդներով։

Գործարաններում ու ֆաբրիկաներում, ակումբներում, դաշտերում, սովխոզներում, հասարակական այլ և այլ հավաքատեղերում փակցված լոզունգները, պլակատները, պլանների ցուցանիշների տախտակները, առաջավորների նկարները, քարտեզները անմիջական ուժեղ ներգործություն են ունենում դիտողների վրա։ Նրանք ոգևորում

են սովետական մարդկանց, բարձրացնում նրանց հայրենասիրական ոգին, կազմակերպում և ոգեշնչում աշխատանքում:

Տեղական թեմաներին վերաբերող ցուցադրական ագիտացիան հսկայական-կազմակերպական ուժ ունի: Այն հավասարապես ներգործում է արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության, գիտության, կուլտուրայի ու արվեստի աշխատողների վրա: Արտադրության, գիտության, արվեստի ու կուլտուրայի մարդիկ ցուցադրական ագիտացիայի միջոցով կազմակերպված խրախուսանքից ոգևորված՝ դիմում են նորանոր սխրագործությունների, ետ մնացողները լարում են իրենց ուժերը՝ հասնելու առաջավորներին, իրենց ակտիվ մասնակցությունն ապահովելու կոլեկտիվի առջև դրված խնդիրների կատարմանը:

Նախապատրաստվելով զրույցի, կոլեկտիվ ընթերցանության՝ ագիտատորը պետք է օգտվի ցուցադրական միջոցներից: Այդ միջոցները կհաստատեն ագիտատորի խոսքի ճշմարտությունը, կհարստացնեն նրա զրույցի բովանդակությունը: Բացի այդ բոլորից, ցուցադրական միջոցները ավելի մատչելի են դարձնում թեմայի բովանդակությունը, օգ-



նում են ունկնդիրներին այս կամ այն թեմային վերաբերող թվերն ու փաստերը հիշողության մեջ պահելու և այլն:

Սովետական Միությանը վերաբերող զրույցները՝ լինի դա հանքային հարստությունների, էլեկտրիֆիկացիայի, սովետական հայրենասիրության մասին, կամ մի այլ թեմայով, չի կարելի կազմակերպել առանց քարտեզների: Դրա համար ագիտատորն ինքը պետք է լավ ուսումնասիրի քարտեզը, գիտենա այն ոչ միայն իր նախընտրած թեմայի սահմաններում, այլ ավելին, ունկնդիրների երբեմն հեռու գնացող հետաքրքրությունը բավարարելու, զրույցի, ընթերցանության ժամանակ ունկնդիրների տված հարցերին հնարավորին չափ սպառիչ պատասխանելու համար:

Այժմ Սովետական Միությունում կատարվող ամենախոշոր աշխատանքային իրադարձությունը դա կոմունիզմի մեծ կառուցումների շինարարությունն է: Ամբողջ երկիրը մասնակցում ու հետևում է այդ գործին: Մեր երկրի մարդիկ հետաքրքրությունից բացի ձգտում են ակտիվորեն մասնակցել մեր ժամանակաշրջանի ամենամեծ կառուցումներին: Սովետական մարդկանց հետաքրքրությունը բավարարելու, նրանց արտադրական խան-

դավառությունը առաջ մղելու, գլխավորելու համար, պարտիական կազմակերպությունները աշխատավորական կոլեկտիվներում անց են կացնում ագիտացիոն պարապմունքներ։ Այդ պարապմունքներից ոչ մեկը, ասենք «Ի՞նչ կտան մեր երկրին կոմունիզմի կառուցումները», «Մոսկվան հինգ ծովերի նավահանգիստ է» և այլ թեմաներով, չի կարելի կազմակերպել առանց քարտեզի։ Ընդհանուր տեղեկությունների հետ ագիտատորը քարտեզի վրա ցույց կտա կառուցվող էլեկտրակայանները, որոնց էներգիան կարող է փոխարինել 50 միլիոն մարդու աշխատանք։ Նա ցույց կտա կառուցվող իրրիգացիոն ամբողջ ցանցը և դրանով ջրովի և ոռոգելի դարձվող հողերի տարածությունները։ Ունկնդիրը կարող է տեսնել, որ այդ տարածությունը հավասար է մի քանի կապիտալիստական երկրների տերիտորիաների և այլն։

Ագիտատորը քարտեզի վրա ցույց տալով մեզ մոտ 5—7 տարում կառուցվող ջրանցքների ցանցի երկարությունը, ոռոգվող հողերի տարածությունը, կառուցվող գերհզոր էլեկտրակայաններն ու նրանց հարյուրավոր կիլոմետրերով ձգվող մագիստրալները և այդ բոլորը համեմատելով կապիտալիստական երկրների 10—70 տարում կառուցված ջր-



րանցքների, էլեկտրակայանների հետ, դրանով ունկնդիրներին պարզորեն պատկերացում կտա կոմունիզմի կառուցումների մինչ այժմ չտեսնված մասշտաբների, աշխատանքի հսկայական ծավալի ու թափի մասին։ Դրանով ագիտատորը ունկնդիրների մեջ կամրապնդի այն համոզումը, որ միայն մեր հասարակարգում է հնարավոր ձեռնարկել այդպիսի շինարարություն, կմոբիլիզացնի նրանց ակտիվորեն մասնակցելու այդ կառուցումներին, որպեսզի սովետական մարդկանց նյութական-կուլտուրական դրությունը է՛լ ավելի բարելավվի, որպեսզի մեր սոցիալիստական Հայրենիքը է՛լ ավելի հզորանա և դրանով ամրապնդվի խաղաղության պաշտպանության գործը ամբողջ աշխարհում։

Համապատասխան, համընդհանուր թեմաներով կազմակերպվող ագիտացիոն պարապմունքներում, քարտեզի հետ լայնորեն պետք է օգտագործել լոզունգները, պլակատները, դիագրամները։ Ագիտացիոն աշխատանքի պրակտիկայում ընդունված է զրույցներ, կոլեկտիվ ընթերցանություններ անցկացնել առանձին լոզունգների, պլակատների մասին։ Ունկնդիրների առջև ցուցադրելով ասենք «Մեր Հայրենիքը համատարած գրագիտության երկիր է» պլակատը, ագիտատորը նա-

խորոք հավաքած թվերով ու փաստերով պետք է ցույց տա այն հոգատար վերաբերմունքը, որ ցուցաբերում են բոլշևիկների պարտիան ու սովետական կառավարությունը աշխատավորության նկատմամբ։ Ունկնդիրներին պետք է հաղորդել մեր երկրում ուսման վրա ծախսվող միջոցների, դպրոցների, բարձրագույն ու գիտական հաստատությունների ցանցի մասին։ Ունկնդիրները տեղեկանալով այդ ամենի մասին, պլակատում կտեսնեն դեպի դպրոց գնացող պատանիների բերկրանքը, բարձրագույն ուսումնական հաստատությունից դուրս եկող երիտասարդության երջանկությունը, կհամոզվեն որ այդ բերկրանքն ու երջանկությունը պարտիայի, կառավարության ու անձամբ ընկեր Ստալինի անդուլ հոգատարության արդյունք են։ Այդպիսի զրույցը կլինի պարզ, հետաքրքիր և արդյունավետ։

Պակաս կարևոր նշանակություն չունի տեղական թեմաների շուրջը կազմակերպվող ցուցադրական ագիտացիան։ Այս դեպքում ցուցադրական ագիտացիան կնպաստի ոչ միայն մարդկանց գիտելիքները հարստացնելու, այլև մոբիլիզացնելու կոլեկտիվի առջև դրված խնդիրները ժամանակին կատարելու։ Տեղական թեմաների շուրջը կազմա-



կերպվող ցուցադրական ագիտացիայի միջոցով անհրաժեշտ է ոչ միայն խրախուսել այն ամենը, ինչ որ լավ է ու առաջավոր, այլև քննադատել բացերն ու թերությունները, հասարակական ներգործության ենթարկել հետ մնացողներին, մարտական, հարձակողական քաղաքական աշխատանք կազմակերպել բուրժուական մնացուկների դրսևորումների դեմ։

Վերցնենք, օրինակ, արտադրանքի որակին նվիրված ցուցադրական ագիտացիայի խնդիրները։ Շատ հաճախ այս թեմայով մեր ագիտատորները զրույցներ են անցկացնում, սահմանափակվելով առաջավորների մասին ընդհանուր գովեստներով, իսկ ցածրորակ արտադրանքի հեղինակներին ուղղված քննադատական խոսքերով, բերելով մի քանի թվեր և փաստեր։ Դրա փոխարեն մեր մի շարք ագիտատորներ արտադրական ձեռնարկություններում կազմակերպում են խոտանի տախտակներ։ Տախտակի վրա ցուցադրելով լավ և վատ արտադրանքի նմուշները, նրանց արտադրողների անուն ազգանունները, դրանով նախ նրանք հասարակական խրախուսանքի են ենթարկում առաջավորին և հասարակական ներգործության՝ անորակ արտադրանքի հեղինակին։ Դրանից հետո ա-

գիտատորը խոտանի տախտակը մոտ կազմակերպում է ագիտացիոն պարապմունք։ Ունկնդիրներին ցույց տալով բարձրորակ և անորակ արտադրանքի նմուշները, հաղորդում, թե ինչքան վնաս է տվել ձեռնարկությանը վատորակ արտադրողը և եթե նա այդպես շարունակի, վնասը ինչքանի կարող է հասնել։ Ագիտացիոն պարապմունքին մասնակցող վատորակ արտադրանքի հեղինակին ագիտատորը պարզաբանում է, որ նա իր անկազմակերպ աշխատանքով վնասում է ձեռնարկությանը, թույլ չի տալիս ընկերներին կատարելու սոցիալիստական մրցության կոլեկտիվ պայմանագրով ստանձնած պարտավորությունները և հաղթանակ տանելու մրցության մեջ և այլն։ Ունկնդիրները խրախուսելով առաջավորներին, իրենց ելույթներում պահանջում են ետ մնացողներից, անորակ արտադրանք տվողներից—բարելավել իրենց աշխատանքը, արժանի մնալ սովետական քաղաքացու բարձր կոչմանը, չխանգարել կոլեկտիվին գերազանց կերպով կատարելու իր պարտականությունները սոցիալիստական Հայրենիքի հանդեպ։ Հասկանալի է, որ այս բոլորից հետո, անորակ արտադրանքի



հեղինակը հաշիվ կտա իրեն, կփոխի իր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։

Ցուցադրական ագիտացիայի ներգործող ձևերից են առաջավորների նկարները, պատվո տախտակները, կոլեկտիվի աշխատանքային այս կամ այն իրադարձությանը նվիրված «Կայծակ» թերթիկները, պլանների կատարման գրանցման տախտակները և այլն։ Կա՛ առաջավոր բանվորի համար ավելի խրախուսելի բան, քան այն, որ նրա նկարը փակցված է ձեռնարկության աչքի ընկնող տեղում, կամ կա՛ ավելի ոգևորիչ միջոց, քան այն, որ առաջավոր բանվորը մտնելով ձեռնարկություն, տեսնում է ընկերներին՝ երեկվա իր հաջողություններին նվիրված նոր լույս տեսած «Կայծակ» թերթիկը ընթերցելիս։ Ցուցադրական ագիտացիայի հրապարակայնությունը և այդ միջոցով կազմակերպվող մասսայական ներգործությունը, ամենաուժեղ միջոցներն են քաղաքական-մասսայական աշխատանքը գործնական հետևանքների հասցնելու, սովետական մարդկանց քաղաքական ակտիվությունը, աշխատանքային խանդավառությունը է՛լ ավելի բարձրացնելու համար։

# ՖՐԱՆՍԻԱ

Ֆրանսիան իր տերիտորիայով Արևմտյան Եվրոպայի ամենամեծ երկիրն է։ Նրա տարածությունը կազմում է 551 հազար քառակուսի կիլոմետր։ Բնակչությունը հասնում է 42 միլիոն մարդու։

Ֆրանսիան տիրապետում է ընդարձակ գաղութների՝ գլխավորապես Աֆրիկայում և Ասիայում։ Նրա գաղութային տիրույթների ընդհանուր տերիտորիան ավելի քան 20 անգամ մեծ է բուն Ֆրանսիայի տերիտորիայից և հավասար է 11,5 միլիոն քառակուսի կիլոմետրի։ Գաղութների բնակչության թիվը 70 միլիոնից անց է։ 1946 թվականի հոկտեմբերի 13-ին ընդունված կոնստիտուցիայի համաձայն Ֆրանսիան և նրա անդրծովյան տիրույթները կազմում են այսպես կոչված «Ֆրանսիական Միություն»։ Այդ միության մեջ, բուն Ֆրանսիայից բացի, մտնում են՝ Ալժիրը, Մարոկկոն, Թունիսը, Ֆրանսիական Արևմտյան Աֆրիկան, Ֆրանսիական Հասարակածային Աֆրիկան, Մադագասկար, Նոր Կալեդոնիա կղզիները և այլն։ Ֆրանսիական գաղութարարները հավակնություն ունեն տիրելու Հնդկաչինի ամբողջ տերիտորիան, որտեղ և զավթողական պատերազմ են մղում Վյետնամի ժողո-



վրդի դեմ։ «Ֆրանսիական Միություն» ստեղծելով՝ Ֆրանսիայի ռեակցիոն կառավարողները փորձում են քողարկել գաղութային կողոպուտի, կամայականության, բռնությունների իրենց քաղաքականությունը։

Ֆրանսիայի մայրաքաղաքն է Փարիզը։ Փարիզի և նրա արվարձանների բնակչությունը կազմում է մոտ 5 միլիոն մարդ, այն է՝ ամբողջ երկրի բնակչության ավելի քան մեկ տասներորդական մասը։ Ֆրանսիայի խոշորագույն քաղաքների թվին են պատկանում՝ Մարսելը, Լիոնը, Թուլուզան, Բորդոն, Նիցցան, Նանտը։ Արդյունաբերության ամենից ավելի զարգացած ճյուղերն են՝ լեռնարդյունաբերությունը, մետալուրգիական արդյունաբերությունը, մեքենաշինական արդյունաբերությունը, տեքստիլ արդյունաբերությունը, էլեկտրատեխնիկական, քիմիական, գինեգործական արդյունաբերությունները։

Ֆրանսիայի էկոնոմիկայի հրամայական բարձունքները, ինչպես նաև երկրի քաղաքական կառավարման լծակները, գտնվում են մի բուռ մոնոպոլիստների ձեռքում, որոնց սովորաբար կոչում են «կապիտալիստների 200 ընտանիք»։ Նրանց են պատկանում՝ երեսուն ֆինանսական ընկերություններ, նույնքան մետալուրգիական կոմպանիաներ, քսան ածխային և լեռնահանքային ձեռնարկություններ, երեսուն էլեկտրական կոմպանիաներ, քսան ապահովագրական ընկերություններ, տասնյակ քիմիական տրեստներ, գազի և ջրմուղի կոմպանիաներ, երկրի երկաթուղիները և ջրային տրանս-

պորտը։ Կապիտալիստական գիշատիչները իրենց ճիրանների մեջ են առել Ֆրանսիայի ամբողջ էկոնոմիկան։

«130 տարվա ընթացքում,— գրում է ֆրանսիական կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար Մորիս Թորեզը,— Ֆրանսիան երեք ռևոլյուցիա է ապրել, հինգ անգամ փոխվել է նրա քաղաքական ռեժիմը։ Այդ բոլոր ցնցումներից, կործանումներից, հեղաշրջումներից հետո միայն ֆինանսական արքաներն են, որ անխախտ են մնացել, մարմնավորելով կապիտալի իշխանությունը՝ բոլոր ռեժիմների փոփոխման ժամանակ»։

Դեմոկրատիայի և խաղաղության աճող ուժերի դեմ, գաղութներում ուժեղացող ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարելու համար հենարան գտնելու նպատակով, ֆրանսիական կապիտալիզմը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ծառայության անցավ ամերիկյան իմպերիալիզմի մոտ։ Ի դեմս ամերիկյան իմպերիալիզմի՝ ֆրանսիական կապիտալիզմը տեսնում է «200 ընտանիքների» տիրապետությունը պահպանող ժանդարմի։ Ֆրանսիայի տերերն այժմ հաճոյակատարությամբ ենթարկվում են ԱՄՆ-ի մոնոպոլիաների հրամաններին։ Ընդամին ֆրանսիական կապիտալիստները ստիպված են նեղվել և անգրօվկիանոսյան միլիարդատերերին զիջել իրենց շատ դիրքերը՝ թե բուն Ֆրանսիայում և թե գաղութներում։





Ֆրանսիայի կառավարող դասակարգերը առաջին անգամը չէ, որ դավաճանում են իրենց երկրի ազգային շահերին։ Նրանք Հիտլերին և նրա թիկունքում կանգնած գերմանական իմպերիալիստներին իրենց համար շատ ավելի պակաս վտանգավոր էին համարում, քան ֆրանսիական ժողովրդին, հատկապես այն բանից հետո, երբ հակաֆաշիստական ճակատը հաղթանակ տարավ երկրում 1936 թվականի մայիսին տեղի ունեցած ընտրությունների ժամանակ։ Կառավարող կլիկը գերադասեց Ֆրանսիան հանձնել օտարերկրյա զավթիչներին, քան այն տեսնել ազատ, անկախ, դեմոկրատական։ Ֆրանսիական կապիտալիստներն այն ժամանակ ասացին՝ «ավելի լավ է Հիտլերը, քան ժողովրդական ճակատը»։

Ֆրանսիան թանկ վճարեց իր կառավարողների դավաճանության համար, իմպերիալիստների քաղաքականության համար, որոնք առաջին համաշխարհային պատերազմից հետո նպաստեցին գերմանական միլիտարիզմի վերածնմանը։ Կոմունիստական «Ֆրանս Նուվել» շաբաթաթերթի տվյալներով՝ երկրորդ համաշխարհային պատերազմի մարտադաշտերում զոհվել է մոտ 150 հազար ֆրանսիական զինվոր։ Հայրենիքի ազատագրման համար մղվող պայքարում զոհվել է 400 հազար ֆրանտիր (դիմադրության շարժման մարտիկ) և պարտիզան։ Շատ հայրենասերներ զոհվեցին հիտլերյան համակենտրոնացման ճամբարներում և բան-

ներում։ Հարյուր հազարավոր ֆրանսիացիներ զոհվեցին ամերիկա-անգլիական և գերմանական ավիացիայի ռմբակոծություններից, սովից ու հիվանդություններից, Գերմանիայում տաժանակիր աշխատանքի համար ստեղծված ոչ մարդկային պայմանների մեջ, Գերմանիա, ուր քշվել-տարվել էին մեկ միլիոնից ավելի ֆրանսիական քաղաքացիներ։

Հիտլերյան հրոսակախմբերի դեմ Սովետական Բանակի տարած համաշխարհային-պատմական հաղթանակի շնորհիվ Ֆրանսիան փրկվեց գերմանա-ֆաշիստական օկուպանտներից։ 1944 թվականի օգոստոսի 25-ին ապստամբած ժողովուրդն ազատագրեց Ֆրանսիայի մայրաքաղաքը։ Փարիզի ազատագրման կոմիտեն սովետական ժողովրդին ուղղած իր ողջույնի մեջ գրում էր, որ Ֆրանսիան երբեք չի մոռանա այն հիմնական դերը, որ խաղաց Սովետական Միությունը Ֆրանսիայի ազատագրման գործում։



Ֆրանսիան պառլամենտական ռեսպուբլիկա է։ Պառլամենտը կազմված է երկու պալատից, այն է՝ Ազգային ժողովից, որն իրավունք ունի օրենքներ հրատարակել և պատերազմ հայտարարել, և ռեսպուբլիկայի խորհրդից, որն օժտված է համեմատաբար սահմանափակ լիազորություններով։ Ներկայումս ռեակցիոն լագերը պայքարում է ռեսպուբլիկայի խորհուրդը նախկին սենատի վերածելու համար, որն ունենալու է վետոյի իրավունք, այսինքն՝ Ազգային ժողովի որոշում-



ները բեկանելու իրավունք։ Երկու պալատներն էլ ընտրվում են տերիտորիալ սկզբունքով, Ազգային ժողովը՝ ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, իսկ ռեսպուբլիկայի խորհուրդը՝ անուղղակի ընտրական իրավունքի հիման վրա (լիազորների միջոցով)։ Ազգային ժողովի դեպուտատները և ռեսպուբլիկայի խորհրդի անդամները ընտրվում են 5 տարով։ Առաջին պալատում ընտրվում է 625 դեպուտատ, երկրորդում՝ 315 խորհրդական։ Ֆրանսիական ռեսպուբլիկայի պրեզիդենտին (պետության ղեկավարին) ընտրում է պառլամենտը՝ 7 տարով։

1952 թվականի մարտի 8-ից կառավարության ղեկավարը — մինիստրների խորհրդի նախագահն է Անտուան Պինեն, որը կաշվի խոշոր գործարանատեր է, «անկախականների» ռեակցիոն խմբի ղեկավարը։

Նոր կոնստիտուցիայի համաձայն անցկացված Ազգային ժողովի առաջին ընտրությունները տեղի ունեցան 1946 թվականի նոյեմբերին՝ այսպես կոչված պրոպորցիոնալ սիստեմով։ Այդ սիստեմը նախատեսնում է, որ ամեն մի պարտիա պառլամենտում տեղ է ստանում նրա օգտին տրված ձայների քանակին համապատասխան (համեմատ)։ 1946 թվականի ընտրությունների ժամանակ կոմունիստներն ստացան մոտ 5 և կես միլիոն ձայն՝ քվեարկածների ընդհանուր թվի ավելի քան 28 տոկոսը, այսինքն՝ ավելի, քան որևէ այլ պարտիա։ 1946 թվականի ընտրություննե-

րից հետո կոմունիստները, իրենց հարողների հետ միասին, Ազգային ժողովում ունեին 186 տեղ։

1951 թվականին բուրժուական պարտիաները ասպարեզ քաշեցին մի ռեակցիոն օրենք՝ ընտրական «ռեֆորմի» մասին։ Դեպարտամենտների (մարզերի) մեծ մասում ընտրությունների պրոպորցիոնալ սիստեմի փոխարեն մտցվեց մաժորիտար սիստեմը (ֆրանսերեն «մաժորիտե» բառից, որը նշանակում է մեծամասնություն)։ Ըստ այդ սիստեմի՝ տվյալ ընտրական օկրուգում ձայների 50 տոկոսից ավելին ստացած պարտիան կամ պարտիաների կոալիցիան (միավորումը) ստանում է պառլամենտում այդ օկրուգի բոլոր տեղերը։ Մնացած ձայները, որ տրվել են այլ պարտիաների օգտին, կորչում են։

Ֆրանսիական ռեակցիան հույս ուներ, թե այդ ռեակցիոն օրենքի և մի շարք մեքենայությունների օգնությամբ իրեն կհաջողվի պառլամենտ չթողնել պրոգրեսիվ դեպուտատներին։ Բայց, չնայած բոլոր ընտրական խարդախություններին, կոմպարտիայի կողմից գլխավորվող դիմադրության ռեսպուբլիկական և հակաֆաշիստական միության թեկնածուների օգտին 1951 թվականի հունիսի ընտրությունների ժամանակ ձայն տվեց ավելի քան հինգ միլիոն մարդ։ Կոմունիստական պարտիան նորից գրավեց առաջին տեղը՝ իր օգտին տրված ձայների թվով։ Ազգային ժողովի նոր կազմում կոմունիստները և նրանց հարողները ստացան 103 տեղ։



***

Դավաճանելով երկրի ազգային շահերին, ֆրանսիական կապիտալիստները Ֆրանսիան դարձրել են ԱՄՆ-ից կախում ունեցող պետություն։

Աջ-սոցիալիստների լիդեր Լեոն Բլյումը 1946 թվականին մեկնեց ԱՄՆ և այնտեղ կնքեց Ֆրանսիայի համար ստրկացուցիչ մի ֆինանսական համաձայնագիր։ Դա առաջին քայլն էր՝ Ֆրանսիան իր ազգային անկախությունից զրկելու ճանապարհին։ Դրանից հետո Ֆրանսիայի ռեակցիոն պարագլուխները ընդունեցին Ուոլ-ստրիտի կողմից երկրի վզին փաթաթված «Մարշալլի պլանը», որն ուժեղացրեց ամերիկյան մոնոպոլիաներից Ֆրանսիայի ունեցած տնտեսական կախումը։ Ամերիկյան «հովանավորները» սկսեցին դեպի Ֆրանսիա վաճառահանել տարիներով պառկած իրենց արժեքազրկված ապրանքները, խարխլելով նրա էկոնոմիկան։ Անգլօվկիանոսային «խնամակալների» ճնշման տակ՝ Ֆրանսիան կրճատեց իր առևտուրը խաղաղասեր երկրների հետ։ Ուոլ-ստրիտը ֆրանսիական կառավարության իր գործակալներին ստիպեց մի քանի անգամ ֆրանկի դևալվացիա անցկացնել՝ իջեցնել ֆրանսիական վալյուտայի կուրսը դոլլարի նկատմամբ։ Ինչպես հաղորդում էր վերջերս բուրժուական «Օրոր-ֆրանս լիբր» թերթը, «Ֆրանսիայի ազատագրումից հետո ֆրանկը կորցրել է իր արժեքի 90 տոկոսը»։

Ամերիկյան մոնոպոլիստները բառացիորեն խեղդել

են ֆրանսիական ազգային արդյունաբերության շատ ճյուղեր։ «Մարշալի պլանի» ազդեցության տակ առանձնապես խոր անկում են ապրում տրակտորային, շինարարական, տեքստիլ, նավաշինական, կոշկեղենի, կինեմատոգրաֆիայի արդյունաբերությունը և քաղաքացիական արդյունաբերության շատ այլ ճյուղեր։ Կրճատվում է ածխի հանույթը՝ արդեն փակվել է 70 ածխահոր։ Երկրում, նույնիսկ պաշտոնական տվյալներով, 1947 թվականից մինչև 1951 թվականը գործազուրկների թիվն ավելացել է չորս անգամ։ 1951 թվականին Ֆրանսիայում արդյունաբերական արտադրությունը կազմեց 1929 թվականի մակարդակի միայն 97 տոկոսը։ Այդ նշանակում է, որ արդյունաբերական արտադրանքի ծավալով Ֆրանսիան ետ է գլորվել ավելի քան երկու տասնամյակ։

Գյուղատնտեսական մթերքների հարկադիր ներմուծումների հետևանքով, որ Ֆրանսիայի վզին է փաթաթված «Մարշալի պլանով», ինչպես նաև ուժից վեր ռազմական հարկերի հետևանքով՝ ֆրանսիական գյուղացիները քայքայվում են։ Ամեն տարի չքանում են 50 հազարից ավելի չքավոր ու միջակ տնտեսություններ, գյուղացիները վաստակ որոնելու են գնում քաղաքները, նրանցից շատերը լրացնում են գործազուրկների աճող բանակի շարքերը։ Ֆրանսիայի գյուղատնտեսության անկման մասին են խոսում հետևյալ փաստերը. 1950 թվականին ցորենի ցան-



քատարածությունը մեկ միլիոն հեկտարով, համարյա 20 տոկոսով, պակաս էր, քան եղել է պատերազմից առաջ։ 1951 թվականին ստացված համախառն բերքը զգալիորեն ցածր է նախապատերազմյան միջինից։

Ֆրանսիական գյուղում հողն ավելի ու ավելի մեծ չափով կենտրոնացվում է մի բուռ հարուստների ձեռքում։ Յուրաքանչյուր տասը հողագործից մեկն այնքան հող ունի, որքան մնացած ինը՝ միասին վերցրած։

***

Ազգային դավաճանության ուղղությամբ Ֆրանսիայի պարագլուխների կատարած հաջորդ քայլը եղավ երկրի ներգրավումը նոր պատերազմի ամերիկյան հրձիգների ստեղծած Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկի մեջ։

Ուոլ-ստրիտի պահանջով՝ Ֆրանսիայի պարագլուխները վարում են սպառազինությունների կատաղի մրցավազք, որը քայքայում է երկիրը և հարստացնում միլիարդատերերին ու միլիոնատերերին։ Հենց միայն պաշտոնական տվյալներով՝ Ֆրանսիայի ռազմական բյուջեն 1952 թվականին երկու անգամ մեծ կլինի անցյալ տարվա բյուջեից և կհասնի վիթխարի թվի՝ 1 տրիլիոն 400 միլիարդ ֆրանկի։ Իսկ փաստորեն ռազմական նպատակներին հատկացվող միջոցների գումարն ավելի մեծ է, այն կազմում է Ֆրան-

սիայի պետական բյուջեի բոլոր ծախսերի 59 տոկոսը։

Արդեն հինգ տարուց ավելի է, որ ֆրանսիական իմպերիալիստները հանցավոր պատերազմ են մղում Վյետնամի դեմոկրատական ռեսպուբլիկայի դեմ (Հնդկաչինում)։ Այդ պատերազմում արդեն տասնյակ հազարավոր ֆրանսիացիների կյանք է զոհվել։ Ֆրանսիայի ժողովուրդը այդ պատերազմն անվանում է «կեղտոտ պատերազմ»։ Ֆրանսիական կապիտալիստները նորանոր պատժիչ զորքեր են ուղարկում Մարոկկո, Թունիս և մյուս գաղութները, որոնց ժողովուրդները օրավուր վճռական պայքարի են ելնում իրենց ազատության և անկախության համար, իրենց երկրները ռազմական բազայի վերածելու դեմ։

Ֆրանսիայի կառավարողների վարած իմպերիալիստական քաղաքականությունը, սպառազինությունների մրցավազքը քայքայման, սովի, թշվառության են մատնում աշխատավորներին։ Անցած տարում Ֆրանսիայում հարկերի ընդհանուր գումարը 54 անգամ շատ էր, քան եղել է 1938 թվականին։ Տասնյակ անգամ բարձրացել են նաև մթերքների և լայն սպառման մյուս ապրանքների գները։ Մինչև իսկ կաթոլիկական պրոֆմիությունների լիդեր Բուլադոնն խոստովանում է, որ ֆրանսիական աշխատավորների գնողունակությունը 1951 թվականին 40 տոկոսով ցածր էր, քան 1945 թվականին։



***

Վաշինգտոնի ուղղակի հրամանով Ֆրանսիայի կառավարողները համաձայնեցին Արևմտյան Գերմանիայի վերառազմականացմանը, որն ամենալուրջ սպառնալիք է ստեղծում Ֆրանսիայի անվտանգության համար։ Նրանք ընդունեցին այսպես կոչված «Շումանի պլանի» պայմանները, պլան, որ նախատեսում է ֆրանսիական քարածխային և պողպատաձուլական արդյունաբերությունը միավորել Ռուրի ծանր ինդուստրիայի հետ, վերականգնել Արևմտյան Գերմանիայի ռազմական արդյունաբերությունը։ Դրանով իսկ, ամերիկյան միլիտարիստների վերահսկողության տակ, արդյունաբերական բազա է ստեղծվում Եվրոպայում նոր պատերազմ նախապատրաստելու համար։ Ֆրանսիական կառավարողները միացել են նաև «Պլևենի պլանին», որը «Եվրոպական բանակի» ստեղծման անվան տակ նպատակ ունի վերածնել գերմանա-ֆաշիստական զինված ուժերը։ Երկու պլաններն էլ իրականում մշակել են ամերիկյան իմպերիալիստները, թեև դրանք կոչվում են ֆրանսիական մինիստրների անուններով։

Ֆրանսիական կառավարողները Արևմտյան Գերմանիայի նկատմամբ վարած իրենց քաղաքականությամբ՝ ազատ են արձակում գերմանական միլիտարիստների ձեռքերը, խախտում են 1944 թվականի դեկտեմբերի 10-ին կնքված ֆրանս-սովետական դաշինքի և փոխադարձ օգնության պայմանագրի

հիմքերն ու նպատակը։ Ֆրանսիայի ներկայացուցիչները, Հյուսիս-ատլանտյան բլոկի մյուս մասնակիցների հետ միասին, Միավորված Ազգերի կազմակերպությունում շարունակ դեմ են դուրս գալիս սպառազինությունները կրճատելու, հինգ մեծ տերությունների միջև խաղաղության Պակտ կնքելու, ատոմային զենքն արգելելու վերաբերյալ սովետական առաջարկներին և Սովետական Միության մյուս առաջարկներին, որոնց նպատակն է ամրապնդել խաղաղությունը և վերացնել նոր պատերազմի սպառնալիքը։ Ֆրանսիայի կառավարողները պաշտպանում են ամերիկյան իմպերիալիստներին՝ Կորեայի ժողովրդի դեմ նրանց մղած հանցավոր արյունահեղ պատերազմում։

Ֆրանսիայի՝ Հյուսիս-ատլանտյան բլոկին միանալուն հետևեց նրա տերիտորիայի օկուպացումը ԱՄՆ-ի զորքերի կողմից։ Ամերիկացիները զավթեցին Ֆրանսիայի կարևորագույն նավահանգիստները՝ Շերբուրը, Բորդոն, Լա Ռոշելը, Լա Պալլիսը և այլն։ Այդ նավահանգիստները այն տեղերն են, որտեղ իջնում են ամերիկյան զորքերը և կանգնում նրանց ռազմանավերը, որտեղ ստեղծվել են ռազմամթերքի և վառելանյութի պահեստներ։ Ամերիկյան զորքերը գրավել են Ֆրանսիայի նաև մի շարք կարևորագույն երկաթուղային հանգույցները և աերոդրոմները։ Մի շարք շրջաններում նրանք խլում են գյուղացիների հողերը՝ նոր աերոդրոմներ կառուցելու համար, ոչնչացնում են ցանքերը, խլում ֆրանսիացիների տները։ «Կայե դյու կոմ-



յունիսմ» ժուռնալի հաղորդագրությամբ՝ 90 դեպարտամենտից (մարզից) 80-ին այս կամ այն չափով շոշափել է ամերիկյան օկուպացիան։ Բուն Փարիզում ամերիկացիները զավթել են 400 ամենալավ շենքերը։

Ամերիկյան ռազմական իշխանությունները ամենուրեք Ֆրանսիայում փորձում են մտցնել իրենց «կարգերը», իրենց պահում են այնպես, ինչպես ԱՄՆ-ի գաղութներից մեկում։ Այսպիսով, ֆրանսիական ժողովուրդը իր բուրժուազիայի դավաճանության հետևանքով նորից ընկել է ծանր տառապանքի մեջ։ Մեկ տասնամյակում Ֆրանսիան երկրորդ անգամ է, որ ռազմական օկուպացման է ենթարկվել։

Ֆրանսիայի բոլոր բուրժուական պարտիաները պաշտպանում են այն քաղաքականությունը, որը հաճելի է ԱՄՆ-ի մոնոպոլիաներին։ Դրա համար էլ հայրենասերները այդ պարտիաներին անվանում են «ամերիկյան պարտիաներ»։

**Սոցիալիստական** պարտիան բանվոր դասակարգի դավաճանների, ֆրանսիական, ինչպես նաև ամերիկյան բուրժուազիայի հավատարիմ գործակալների պարտիան է։ Աջ-սոցիալիստները խաբեությամբ և պառակտողական քաղաքականությամբ ձգտում են թուլացնել բանվորական շարժումը, խանգարել աշխատավորների ուժերի համախմբմանը այն պայքարում, որ մղվում է ազգային անկախության, խաղաղության, հացի և ազատության համար։ Սոցիալիստական պարտիայի լիդերները՝ Գի Մոլլեն, Ժյուլ Մոկը, Ռամադիեն,

Դանիել Մեյերը, Անդրե Ֆիլիպը-Նոր պատերազմի նախապատրաստման քաղաքականության մոլի կիրառողներ են։ Իմպերիալիզմի այդ լակեյների դեմքը գնալով ավելի է պարզվում ֆրանսիացիների համար։ Աջ-սոցիալիստներից հեռանում են նրանց կողմնակիցները։ 1946-ից մինչև 1949 թվականը սոցիալիստական պարտիայի անդամների թիվը 355 հազարից իջել է 150 հազարի։ Սոցիալիստների կենտրոնական օրգան «Պոպյուլեր դե Պարի» թերթը կորցրել է իր ընթերցողների ավելի քան երեք քառորդ մասը։

Ժողովրդա-ռեսպուբլիկական շարժում պարտիան (ՄՌՊ) ստեղծվել է 1944 թվականի վերջին՝ զանազան կաթոլիկական պարտիաների և խմբավորումների միաձուլման հետևանքով։ Այդ պարտիայի լիդերները-Ժորժ Բիդո, Մորիս Շուման, Ռոբեր Շուման և այլն, սերտորեն կապված են Վատիկանի և Ֆրանսիայի ու ԱՄՆ-ի մոնոպոլիական կապիտալի հետ։ Վերջին տարիներս ՄՌՊ-ի ազդեցությունն զգալիորեն ընկել է։ Շատ ընտրողներ երես դարձրին այդ պարտիայից, ըմբռնելով նրա քաղաքականության ռեակցիոն էությունը։

1947 թվականին գեներալ դը Գոլի ստեղծած ֆաշիստական պարտիան կրում է «ֆրանսիական ժողովրդի միավորում» (ՌՊՖ) անունը։ Դա այն խիստ ռեակցիոն պարտիան է, որը ձգտում է Ֆրանսիայում հաստատել ֆաշիստական դիկտատուրա՝ դը Գոլի գլխավորությամբ։ Դը Գոլը բազմաթիվ կապերով



կապված է Ֆրանսիայի և ԱՄՆ-ի ամենախոշոր կապիտալիստների և բանկիրների հետ։ ՌՊՖ-ի զինված ջոկատները՝ ֆաշիստական ջարդարարների այդ բանդան հովանավորություն է գտնում իշխանությունների և ֆինանսական մագնատների կողմից։

Ռադիկալ-սոցիալիստների պարտիան Ֆրանսիայի ամենահին բուրժուական պարտիան է։ Իր ժամանակին աչքի ընկնող դեր էր խաղում քաղաքական ասպարեզում, բայց այժմ նրա ազդեցությունը սակավ զգալի է։ Այդ պարտիայի լիդերներն են Էրրիոն, Դալադյեն, Կեյը, Մարին։ Ռադիկալ-սոցիալիստները բլոկ են կազմում մյուս ռեակցիոն խմբավորման՝ ՅՈՒԴՍՌ-ի, այսինքն՝ «Դիմադրության դեմոկրատական-սոցիալիստական միության» հետ։ Այդ խմբավորումը, որին գլխավորում է Ռենե Պլևենը, ստեղծվել է պատերազմից հետո՝ դը Գոլի դրածոների կողմից։ Ռադիկալները, ՅՈՒԴՍՌ-ի անդամները և մի քանի այլ ռեակցիոն պարտիաների ներկայացուցիչները մտնում են այսպես կոչված «Ձախ ռեսպուբլիկականների միավորման»՝ ՌԺՌ-ի մեջ։

«Անկախ ռեսպուբլիկականների» ռեակցիոն խմբավորումը, ինչպես նաև «Գյուղացիական և սոցիալական գործողություն» խմբավորումը գլխավորվում են խոշոր կապիտալիստներից և կալվածատերերից խիստ կախումն ունեցող քաղաքագետների կողմից։ Շատ հարցերում նրանք բացահայտորեն հանդես են գալիս դը Գոլի ֆաշիստական պարտիայի հետ համատեղ։

Ֆրանսիայում պատերազմի տենդագին նախապատրաստմանը զուգորդում են դեմոկրատական ազատությունների մնացորդների և աշխատավորների նվաճումների դեմ ռեակցիայի կողմից կատարվող հարձակումը, առաջադեմ գործիչների դեմ ուղղված տեռորն ու դատաստանը։

Վերջերս կոմունիստական պարտիայի քարտուղար Ժակ Դյուկլոյի և մյուս հայրենասերների պրովոկացիոն ձերբակալությունները արդյունք են ֆրանսիական կառավարության մինչև ուղն ու ծուծը ռեակցիոն քաղաքականության, որը ցասումնալից բողոք է առաջ բերել ինչպես բուն Ֆրանսիայում, այնպես էլ ամբողջ աշխարհում։

Ֆրանսիական պրոլետարիատի և ամբողջ ժողովրդի պայքարը ընդդեմ իմպերիալիստական ռեակցիայի, հանուն խաղաղության, ազգային անկախության և դեմոկրատիայի՝ գլխավորում է կոմունիստական պարտիան: Մորիս Թորեզի և նրա մարտական զինակիցներ Ժակ Դյուկլոյի, Մարսել Կաշենի, Անդրե Մարտիի, Ֆրանսուա Բիյուի, Ռայմոն Գյույոյի, Օգյուստ Ժեկյորի փորձված ղեկավարությամբ կոմունիստական պարտիան համախմբում է ֆրանսիացիներին ազգի շահերի համար մղվող պայքարում։ Գերմանական օկուպացիայի տարիներին կոմպարտիան հիտլերյան զավթիչներին դիմադրողների ոգեշնչողն ու կազմակերպիչն էր։ 75 հազար կոմունիստներ քաջի մահով



ընկան հայրենիքի ազատագրման համար մղվող պայքարում։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում ֆրանսիական կոմունիստական պարտիան արտաքին և ներքին ռեակցիայի ուժերի դեմ մղվող անհաշտ պայքարում պաշտպանում է ֆրանսիական ժողովրդի կենսական շահերը և երկրի ազգային անկախությունը։ Նա մերկացնում է իմպերիալիստական ռեակցիայի և բանվորական շարժման մեջ նրա գործակալության մեքենայությունները, քաջարի պայքար է մղում նոր պատերազմի հրձիգների դեմ։

Կոմունիստները պահանջում են վերականգնել Ֆրանսիայի ազգային անկախությունը՝ հրաժարվել բոլոր ստրկացուցիչ պայմանագրերից, որոնք Ֆրանսիան ենթարկում են ԱՄՆ-ին։ Նրանք ֆրանսիացիներին կոչ են անում միավորվել և պահանջել, որ ստեղծվի լայն հիմունքներով դեմոկրատական կառավարություն, որը անցկացնի խաղաղությունը, ռեսպուբլիկան, ազգային անկախությունը պաշտպանելու քաղաքականություն։

Կոմունիստները, որպես ժողովրդի շահերի հետևողական և քաջարի պաշտպաններ, հանդես են գալիս խաղաղության համար պայքարող մարտիկների ավանգարդում։ Ֆրանսիական աշխատավորների առաջնորդ Մորիս Թորեզը 1948 թվականին հայտարարեց. «Ֆրանսիական ժողովուրդը չի կռվի, երբեք չի կռվի Սովետական Միության դեմ»։ Այդ երդումը լսեցին և

կրկնեցին միլիոնավոր հասարակ ֆրանսիացիներ։

Կոմունիստական պարտիան լայն պաշտպանություն և անհողդողդ վստահություն է վայելում ժողովրդական մասսաների կողմից։ Նա իր շարքերում ունի 800 հազար անդամ։

Ֆրանսիայի բանվոր դասակարգը, որին գլխավորում է կոմունիստական պարտիան, շարունակ ընթանում է իր հայրենիքի ազգային շահերի պաշտպանության համար մղվող պայքարի ավանգարդում։ Այդ պայքարում նա հանդես է գալիս աշխատավոր գյուղացիության և աշխատավոր պրոգրեսիվ ինտելիգենցիայի հետ սերտ դաշինք կնքած։

Ֆրանսիական ժողովրդի շահերի համար մղվող պայքարում կարևոր դեր է խաղում պրոֆմիությունների միավորումը՝ Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան։ Կոնֆեդերացիան աշխատավորների տնտեսական և սոցիալական իրավունքների համար մղվող պայքարը զուգակցում է խաղաղության և երկրի անկախության համար մղվող գործնական պայքարի հետ։ Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի շարքերն աճում և ամրանում են։ Ֆրանսիայի պրոֆմիությունների բոլոր անդամների 80 տոկոսը մտնում է Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի մեջ։

Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան հետևողականորեն պայքարում է պրոֆմիութենական շարժման միասնության համար։ Նա զանազան ուղղություն ունեցող պրոֆմիություններին պատկանող բանվորներին



և անկազմակերպ աշխատավորներին անդուլ կերպով կոչ է անում համախմբված շարքերով հանդես գալ պաշտպանելու իրենց իրավունքները, իրենց առօրյա պահանջները։ Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան գլխավորում է ամենալայն թափ ընդունած գործադուլային շարժումը։ Անցյալ տարի Ֆրանսիայում տեղի ունեցավ ավելի քան 3 հազար գործադուլ, գործադուլավորների թիվը, ոչ լրիվ տվյալներով, անցավ երկու անգամ և հասավ ավելի քան 3 միլիոն մարդու։

Անցյալ տարի բանվորների հաղթանակով վերջացան 400 հազար երկաթուղայինների, գազարդյունաբերության և էլեկտրոկայանների 120 հազար բանվորների, Փարիզի քաղաքային տրանսպորտի 30 հազար բանվորների և ծառայողների գործադուլները։ Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի ղեկավարությամբ Ֆրանսիայի աշխատավորները ներկայումս պայքարում են աշխատավարձը 15 տոկոսով ավելացնելու համար, այսինքն այնքանով, ինչքան ավելացել են լայն սպառման ապրանքների գները անցյալ տարվա սեպտեմբերից։

Խաղաղության, ազգային անկախության համար, ընդդեմ ֆաշիզմի հարձակման, հանուն աշխատանքի իրավունքի մղվող պայքարում ժողովրդի ուժերը համախմբելու գործում կարևոր դեր են խաղում նաև այնպիսի մասսայական կազմակերպություններ, ինչպիսիք են՝ «Ֆրանսիական կանանց միությունը» (նախագահ՝ Էժենի Կոտոն), «Ֆրանսիայի ռեսպուբլիկա-

կան երիտասարդության միությունը» (ղեկավար՝ Լեո Ֆիգեր), որոնք իրենց շարքերում միավորում են հսկայական թվով հայրենասեր կանանց ու երիտասարդների։

Ֆրանսիայում ուժեղ պայքար է տեղի ունենում դեմոկրատիայի ու խաղաղության ուժերի և ռեակցիայի ու պատերազմի ուժերի միջև։ Պրոգրեսիվ լագերի հզորության աճումը տարընթացություն ու տատանումներ է առաջ բերում ռեակցիայի բանակում։ Բուրժուազիան տագնապ է ապրում, մի բան, որ իր արտահայտությունն է գտնում կառավարության հաճախակի փոփոխման մեջ։ 1946 թվականից հետո 14 կաբինետ է փոխվել Ֆրանսիայում։ Կառավարական ճգնաժամերի գլխավոր պատճառն այն դիմադրության աճումն է, որ ժողովրդական մասսաները ցույց են տալիս ազգային շահերի դավաճանության քաղաքականությանը, ամերիկյան թելադրանքին ենթարկվելուն, թշվառության ու պատերազմի քաղաքականությանը։

Խաղաղության կողմնակիցների շարժումը մեծ հաջողությունների է հասել Ֆրանսիայում։ Երկրում կան խաղաղության համար ակտիվորեն պայքարող միլիոնավոր մարտիկներ։ Նրանք հսկայական խանդավառությամբ անցկացրին խաղաղության պաշտպանության գործի համար այնպիսի կարևորագույն կամպանիաներ, ինչպիսիք էին՝ ստորագրությունների հավաքումը Ստոկհոլմյան Կոչի տակ, Գերմանիայի վերառազմականացմանը դեմ քվեարկելը և այլն։ Այդ



կամպանիաներում մեծ դեր են խաղում Խաղաղության պաշտպանության տեղական կոմիտեններն ու խորհուրդները, որոնք ստեղծվել են ձեռնարկություններում ու բնակավայրերում և միավորում են բնակչության տարբեր խավերի մարդկանց։ Նրանց գործունեությունը ղեկավարում է Խաղաղության Ազգային Խորհուրդը, որին գլխավորում է Իվ Ֆարժը։

Պատերազմի հրձիգների դեմ հերոսական պայքար են մղում Ֆրանսիայի փառապանծ դոկերները։ Չնայած հետապնդումներին, քաղցին ու թշվառությանը, նրանք միշտ էլ հրաժարվում են բեռնաթափել «մահվան ծանրոցները»՝ ամերիկյան ռազմանյութերը։ Նրանց հերոսությամբ ու կայունությամբ հիանում են բոլոր ազնիվ ֆրանսիացիները։ Ամբողջ ժողովուրդը պաշտպանում է դոկերների դիմադրությունը։

Խաղաղության վեհ շարժումն առաջ է քաշել այնպիսի համարձակ, անձնվեր մարտիկներ, ինչպիսիք են Ժոլիո-Կյուրին, Ռայմոնդա Դյենը և Հանրի Մարտենը, որոնք դարձել են ֆրանսիայի ազգային հերոսներ։

Ֆրանսիական ժողովուրդը ջերմորեն պաշտպանում է հինգ մեծ տերությունների միջև Խաղաղության Պակտ կնքելու վերաբերյալ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Դիմումը։ Մինչև 1952 թվականի հունվարի 1-ը այդ պատմական պահանջի տակ իրենց ստորագրությունն են դրել 10 միլիոն ֆրանսիացիներ։

Ֆրանսիայի պատմության մեջ դեռ չէր եղել մարդկանց այդպիսի մասսայական համախմբված շարժում։

Արտահայտելով Ֆրանսիայի միլիոնավոր մասսաների խոհերն ու զգացմունքները, խաղաղության նրանց անկոտրում կամքը, Մորիս Թորեզն ասում է. «Երբ հանցավոր կառավարությունները երբևէ համարձակվեն աշխարհը նետել տառապանքների ու կործանման անդունդը,— այն ժամանակ վա՛յ նրանց։ Խաղաղության կողմնակիցները կհաղթեն, եթե գործեն միահամուռ կերպով և ակտիվորեն։ Որովհետև նրանք պայքարում են կյանքի համար, իսկ կյանքը միշտ հաղթում է մահին։ Աշխատավորների միասնությունը կապահովի խաղաղությունն ամբողջ աշխարհում»։

ՅՈՒ. ԿՈՉԼՈՎՍԿԻ

---

Պատ. խմբագրի տեղակալ՝ Տ. ՎԱՐԺԱՊԵՏՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 11 1952 г.

ՎՖ 03958 Պատվեր № 526 Տիրաժ 10.000

Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան, Կնունյանցի փ. № 8